# ՏԻԳՐԱՆ ՋՈՒՀԱՃԵԱՆ
# DIKRAN TCHOUHADJIAN

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ
## ԴԱՇՆԱԿԻ ՀԱՄԱՐ

## WORKS FOR PIANO

# DIKRAN TCHOUHADJIAN

## WORKS FOR PIANO

Edited by
HAIG AVAKIAN

Cairo 2005

Այս հատորը լոյս կը տեսնէ
Գահիրէի Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան
«Սաթենիկ Ն. Չագըր հիմնադրամ»-ին մեկենասութեամբ

Տպագրութիւն՝ Նուպար Տպագրատուն

Բառերու եւ ձայնանիշերու շարուածք եւ էջադրում՝
Հայկ Աւագեան

دار نوبارللطباعة
رقم الإيداع :٢٠٠٥/٤٠٣٨

# ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կու գամ խորին շնորհակալութիւններս յայտնելու Գահիրէի ՀԲԸՄ-ի վարչութեան՝ որ ընդունեց հոգալ այս հատորի տպագրութեան ծախսերը:

Շնորհակալութիւն Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի տնօրէն՝ տոքթ. Հենրիկ Բախչինեանին, երաժշտական բաժինի աւագ փոնտապահ՝ Մարինէ Մուշեղեանին, երաժշտական բաժինի վարիչ՝ Ցօղիկ Բեքարեանին եւ միւս աշխատակիցներուն՝ որոնք բոլոր դիւրութիւնները ընծայեցին ինծի ուսումնասիրելու Թանգարանի Տ. Զուհաճեանի դիւանին ձեռագիր եւ տպագիր նիւթերը:

Շնորհակալութիւն՝ Փարիզի Զուհաճեան Հետազօտական Կեդրոնի տնօրէն Ժիրայր Բաբազեանին, որ տրամադրեց Զուհաճեանի դաշնակի չորս տպագիր ստեղծագործութիւններ:

Շնորհակալութիւն՝ Գահիրէի Ազգային Առաջնորդարանի Թորգոմեան Մատենադարանի վարիչ Ասպետ Արթինեանին, որ տրամադրեց դաշնակի երկու տպագիր ստեղծագործութիւններ:

Շնորհակալութիւն՝ Փարիզի Նուպարեան Մատենադարանի վարիչ Յարութիւն (Ռէյմոն) Գէորգեանին, որ տրամադրեց դաշնակի մէկ տպագիր ստեղծագործութիւն:

Շնորհակալութիւն՝ եգիպտահայ արուեստագիտուհի Շաքէ Յովակիմեանին, որ տրամադրեց դաշնակի մէկ տպագիր ստեղծագործութիւն:

Հ. Ա.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

ԺԹ. դարու 20-ականներէն սկսեալ, Պոլսոյ մէջ աստիճանաբար մուտք կը գործէ ու կը տարածուի դաշնակը: Յովհաննէս Միւհէնտիսեանի մասին Յակոբ Պարոնեան կը գրէ՝ թէ «եթէ չենք սխալիր, ինք առաջինն եղաւ ազգին մէջ դաշնակ զարնող» եւ կ'աւելցնէ՝ թէ «այդ ատենները դաշնակն շատերու անծանօթ նուագարան» մըն էր[1]: Թէեւ Պարոնեան ճըշգրիտ թուական չէ նշած, սակայն այս խօսքերը պէտք է վերաբերին ԺԹ. դարու 20-30-ական թուականներուն: Իսկ 1860-ականներուն սկիզբըրն արդէն «դաշնակը մուտ գործած էր [Պոլսոյ] հայ սալօններու մէջ», դիտել կու տայ Վահան Զարդարեան[2]:

Նոյն պատկերը կը ներկայացնէր նաեւ արեւելահայութիւնը: Ռափայէլ Պատկանեան 1850-ականներու երկրորդ կէսին կը գրէր՝ թէ «Փառք եւ պատիւ մեր դարուայ հայերու մէջ վառուած եռանդին՝ դաշնամուր նուագարանը այժմ հազուագիւտ բան չէ՛ մեր օրիորդների եւ երիտասարդների համար»[3]:

Տիգրան Չուհաճեան (Կ. Պոլիս, 1837 – Զմիւռնիա, 1898) առաջին հայ երաժշտահանն էր՝ որ լրջօրէն զբաղուեցաւ դաշնակով: Անոր դաշնակի ստեղծագործութիւնները կ'ընդգրկեն ոճական լայն հնչածաւալ մը՝ սկսելով պարզ պարեղանակներէն մինչեւ մեծ ու հարուստ ուժականութեամբ երկեր, մերթ արեւելեան գոյներով տոգորուած, մերթ արեւմտաեւրոպական հնչականութեամբ համակուած:

Ան թողեց դաշնակի գործերու ընտիր ժառանգութիւն մը՝ որուն մեծամասնութիւնը առանձին պրակներով հեղինակի կենդանութեան լոյս տեսած են Պոլսոյ մէջ: Անոնք բոլորն ալ չատոնց դարձած են դիւանային (archival) նիւթեր՝ որով անհրաժեշտութիւն մըն էր անոնց ամփոփումը մէկ հատորի մէջ: Այս հատորին մէջ հրապարակուող սակաւաթիւ անտիպ գործերն են՝ 1re Fugue (Առաջին ֆիւկ), 3ème Fugue (Երրորդ ֆիւկ), եւ անվերնագիր ձեռագիր մը՝ զոր իմ կողմէս պայմանականօրէն խորագրեցի Pièce (Ստեղծագործութիւն): Այս ձեռագիրները կը պահպանուին Երեւանի Զարենց Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Չուհաճեանի Դիւանին (այսուհետեւ՝ **ԶԳԱԹ ՉԴ**) մէջ:

Եթէ 1861-1862-ին՝ շնորհիւ իր իսկ խմբագրած *Քնար երաժշտական* հանդէսին, Չուհաճեան յաջողեցաւ տպագրել իր յօրինած հայերէն երգերն ու ռոմանսները, 1880-ականներէն սկսեալ, դաշնակի գործերն են՝ որոնք առաջ մղուեցան եւ արժանացան տպագրութեան: Արդէն անբաղձալի էր Մկրտիչ Պէշիկթաշլեանի, Գարեգին Զափրաստճեանի եւ այլոց բանաստեղծութիւններուն վրայ յօրինուած հայկական երաժշտութեան հրատարակութիւնը Պոլսոյ մէջ, մինչ դաշնակի կարճ գործեր՝ պատկերաւոր խորագիրներով եւ «չէզոք» բովանդակութեամբ, կարող էին դիւրութեամբ հրատարակուիլ եւ գտնել վաճառքի ասպարէզ:

Դաշնակահար մը չէր Չուհաճեան: Ան փոքր տարիքէն Պոլսոյ մէջ դաշնակի դասեր առած է իտալացի Մանծոնիէն[4] եւ դաշնակի նուագածութեան տիրապետած է այնքան՝ որքան կարողացած է կատարել երգերու նուագակցութիւններ: Ժամանակակից մամուլի հաղորդագրութիւնները կը տեղեկացնեն՝ թէ տարբեր առիթներով ելոյթներ ունեցած է, յաճախ իբրեւ նուագակցող, երբեմն նաեւ իբրեւ մենակատար: Օրինակ, դաշնակի նուագով ելոյթ ունեցած է 1874 Մայիս 5/17-ին, Ֆրանսական Թատրոնին մէջ, Սունդուկեանի *Պէպօ*ի ներկայացումէն ետք՝ ի պատիւ Միհրդատ Ամերիկեանին[5]: ***Թատրոն*** հանդէսը կը յիշատակէ՝ թէ 1875 Օգոստոս 24/Սեպտեմբեր 5-ին, Օրթագիւղի Բարեսէր Ընկերութեան Թատրոնին մէջ, Օրթագիւղի Ս. Թարգմանչաց Վարժարանի աշակերտներու պարգեւաբաշխութեան «հանդէսն սկսաւ Խորէն եպիսկոպոսին *Օրհնեալ որ սիրէք զՀայաստան* անուն տխուր ողբովն՝ զոր Տիգրան էֆէնտի Չուխաճեան իր վարժ մատուըներովն դաշնակի վրայ եղանակեց եւ աշակերտք ձայնիւ հետեւեցան անոր»[6]:

Երաժշտագէտ Նիկողոս Թահմիզեան թիւրիմացութեամբ մը կը նշէ՝ որ 1889 Մայիս 7/19-ի Թեւթոնիայի սրահի նուագահանդէսին, Չուհաճեան կը նուագէ Հայտընի Դաշնակի Եռանուագի դաշնակի նուագամասը[7]: Հայտընի Եռանուագ մը նուագելը կը պահանջէ դաշնակահարական բարձր արհեստավարժութիւն (technique): Զայն կատարողը պէտք է ըլլայ մասնագիտացուած (professional), բարձրահմուտ դաշնակահար: Թահմիզեան իր վարկածին իբրեւ աղբիւր կ'ընդունի *Արեւելք*ի մէջ լոյս

տեսած քննախօսական մը՝ ուր իրօք Եռանուագի դաշնակահարին անունը յիշատակուած է Տ. Զուհաճեան[8]: Սակայն յարգելի երաժշտագէտը չի նկատեր, որ *Արեւելք*ի յաջորդ օրուան թիւին մէջ կը հրատարակուի սրբագրութիւն մը, ուր կը նշուի՝ թէ երէկուայ յօդուածին մէջ, Եռանուագի կատարողին անունը սխալմամբ վերագրուած էր Զուհաճեանին եւ պէտք է ըլլայ Յակոբ Ասատուր[9]:

Զուհաճեան պոլսական շրջանակներու մէջ կը վայելէր դաշնակի հմուտ մանկավարժի վաստակ: 1880-ականներու երկրորդ կէսին եւ 1890-ականներու սկիզբները տպագրուած դաշնակի գործերուն մէկ մասը ձօնած է իր տարբեր աշակերտներուն՝ օր. Ք. Ասատուր (Յատկանշական պար, *Արեւելեանը*), օրք. Մարի եւ Էօժէնի Մարտիրոսեաններ (Էմփրոմփթիւ, *Քուզի Զրվէժը*), օրք. Հայկանոյշ եւ Մաքրուհի Աղնաւուրեաններ (Թարանթէլ), պր. Ք. Շիրինեան (*Կաւոյթ մը եւս*), օրդք. Մեմբար, Վիքթորիա եւ Արսինա Սարաֆեաններ (Սալոնի Մազուրքա, *Սիրուն*), օր. Նեւրիք Փորթուքալեան եւ պր. Միհրան Խուտաւերտեան («Մեծ արաբական պար»), օր. Տիրուհի Ղազարոսեան («Երկրորդ արաբական պար») եւ հանրայայտ Յակոբ Ասատուր (*Յաւերժ շարժում*): Նոյն շրջանին, դասաւանդած է բանաստեղծուհի, արձակագիր Անայիսին եւ իր քրոջ[10]: Անայիս կը յիշէ՝ թէ «երբ դասը կ՚աւարտէր, շատ անգամ հմայիչ եղանակներ կը նուագէր, եւ ես ափ ի բերան մտիկ կ՚ընէի»[11]: Իր աշակերտներուն մէջ եղած են նաեւ Թուրք բարձրաստիճան անձնաւորութիւններ, ինչպէս՝ Երկրագործութեան եւ Առեւտուրի Նախարարութեան Ընդհանուր Քարտուղար Մունիր Պէյ (Փոլքա, *Զուարթութիւնը*) եւ Սուլթանի կցորդ պաշտօնակալ Նայիմ Պէյ (*Զէմիրէ-քատրիլ*):

Պատիւ մըն էր ըլլալ Զուհաճեանի դաշնակի աշակերտը: 1898 Մայիսին, Ռուբէն Որբերեան կը քննախօսէ Իզմիրի Կրթասէրի նուագահանդէսը, ուր կը նուագուի գերմանացի երաժշտահանի մը գործը՝ «զոր ընկերակցութեամբ զարկին Տիկ. Մօրուքեան եւ Տիկ. Ռօվար: Այս վերջինները, հայուհի ու գերմանուհի, գրեթէ մրցումի պէս բան մը ըրին, եւ ուրախ ենք ըսելու թէ հայուհին – Զուհաճեանի հին աշակերտուհի, - գերազանցեց, իր ուժգին ու նուրբ եւ հիանալի կերպով թուչտուն նուագին մէջ, միւսը որ թէեւ վարժ ու ճարտար մատներ այլ աւելի նուաղկոտ հով մը ունէր»[12]:

Սմբատ Դաւթեան կը շեշտէ Զուհաճեանի թողած ազդեցութիւնը դաշնակի դասաւանդումի բնագաւառին մէջ, գրելով. «Իբր ուսուցիչ եւ քաջ դաշնակահար, Տ. Զ. հասցուցած է բազմաթիւ սաներ որոնք երաժշտութիւնը մշակած են, եւ՝ Գեղարուեստի հրայրքով վառ՝ իրենց կարգին տարածած են զայն այլեւայլ խաւեր, բարեբար ներգործութիւն մը ընելով ժողովուրդին վրայ՝ անոր հոգեկան ազնուացման տեսակէտով»[13]:

Իրօք, Զուհաճեան մեծապէս նպաստած է հայկական եւ ընդհանրապէս օսմանեան շրջանակներու մէջ հիմնաւորելու եւ տարածելու դաշնակի յօրինողական թէ կատարողական արուեստը, անոր շնորհելով թափ ու կորով, բովանդակային խորութիւն:

Զուհաճեանի բոլոր դաշնակի գործերուն խորագիրները գրուած են ֆրանսերէն լեզուով, բացի *Մահանուագէն*՝ որ գրուած է թէ՛ ֆրանսերէն եւ թէ՛ հայերէն:

Ինչպէս ընդունուած երեւոյթ էր վիպապաշտութեան շրջանին, անոնց հրատարակութիւններուն մէջ մեծ տառերով գրուած են ստեղծագործութեան ծրագրային խորագիրները (*Արեւելեան քնարը, Արեւելեանը, Քուզի Զրվէժը, Պատրանքներ, Զուարթութիւնը, Սիրուն*, եւլն.), որոնց տակը փոքր տառերով նշուած է սեռը (քափրիչիօ, պար, էմփրոմփթիւ, վալս, փոլքա, մազուրքա, եւլն.): Այս հատորին մէջ, նախընտրութիւնը տուի երկրորդին՝ զայն նշելով գլխագիր տառերով, որմէ ետք յիշատակեցի ծրագրային խորագիրը, ինչպէս ընդունուած է ժամանակակից հրատարակութիւններուն մէջ:

Բոլոր գործերը՝ տպագիր թէ ձեռագիր, անթուակիր են: Քանի մը տպագիրներու մասին անդրադարձած է պոլսահայ ժամանակակից մամուլը, որմէ կարելի է քաղել կարեւոր տեղեկութիւններ: Մնացածին մասին տեղեկութիւններ կը պակսին: Այս պատճառով, ստեղծագործութիւններուն յաջորդականութիւնը պայմանականօրէն դասակարգեցի ըստ սեռի եւ բնոյթի, սկսելով արեւելեան թեքում ունեցող գործերէն (*Արեւելեան քնարը, Արեւելեանը, Արեւելեան ֆանթէզիներ*), որուն յաջորդեցին արեւմտեան բնոյթ կրող համեմատաբար ծաւալուն գործերը (*Քուզի Զրվէժը, Յաւերժ շարժում, Պատրանքներ*), եւ ի վերջոյ՝ կաւոթներ, փոլքաներ, մազուրքաներ, եւլն.:

Կարեւոր համարեցի նաեւ առանձին գլուխի մը մէջ տեղադրել Զուհաճեանի օփերաներէն եւ

օփերէթներէն քաղուած տեսարաններու դաշնակի հեղինակային եւ ոչ-հեղինակային փոխադրութիւնները, որոնք պատկերացում մը կու տան այդ ժամանակուայ գեղարուեստական պահանջներուն եւ մտածողութեան:

Նշուած բոլոր մատնաշարերը (fingering) կը գտնուին տպագիր եւ ձեռագիր բնագիրներուն մէջ:

Փոխադրութիւններուն պարագային, նոյնութեամբ պահպանած եմ փոխադրութեան յիշատակումի բնագրային ձեւերը՝ Arrangé pour piano par (Դաշնակի վերածուած այսինչին կողմէ), Arrangée pour piano par (Դաշնակի վերածուած այսինչին կողմէ), Pour piano par (Դաշնակի համար այսինչին կողմէ) եւ Transcrit pour piano par (Դաշնակի փոխադրութիւն այսինչին կողմէ), որոնք բոլորն ալ նոյն իմաստը կ'արտայայտեն:

Տպագիր ոչ մէկ գործի ինքնագիր ձեռագիր կը գտնուի ԶԳԱԹ ԶԴ-ին մէջ: Ըստ երեւոյթին, Զուհաճեան չէ պահպանած տպագրուածներուն ձեռագիրները:

Ստորեւ կը յիշատակեմ հրատարակութեանս համար օգտագործած իւրաքանչիւր ստեղծագործութեան աղբիւրը եւ անոր տպագրական թէ ձեռագրական տուեալները: Որոշ ստեղծագործութիւններու պարագային աւելցուցած եմ հեղինակին ժամանակակից մամուլին մէջ եւ այլուր պահպանուած տեղեկութիւններ եւ արտայայտուած մեկնաբանութիւններ: Այլապէս՝ նման տեղեկութիւններու բացակայութեան պարագային, բաւարարուած եմ լոկ տպագիրին կամ ձեռագիրին տուեալներուն թուարկումով:

Նշեմ նաեւ՝ որ ԶԳԱԹ ԶԴ-ը նախապէս մշակուած ու թուագրուած էր Տանիա Կափլանեանի կողմէ: 1990-ականներուն, դիւանը կը վերամշակուի Յօղիկ Բեքարեանի կողմէ, որ նիւթերուն կու տայ այլ թուագրումներ: Ստորեւ, դիւանի նիւթերուն թուագրումները նախ նշանակած եմ նոր, ներկայ տարբերակով (Բեքարեանի) եւ ապա՝ փակագիծերու մէջ, աւելցուցած նոյն նիւթին հին թուագրումը (Կափլանեանի): Օրինակ՝ ԶԴ թիւ 185 (ՀԹ 46) կը նշանակէ Զուհաճեանի դիւանի այժմեան թիւ 185-ը, որ հին թուագրութեամբ (ՀԹ) եղած էր 46:

## ՏՈՔԹՈՐԱԿԱՆ ԹԵԶ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

Իր տեսակին մէջ աննախադէպ երեւոյթով մը, 2004 Նոյեմբեր 8-ին, Գահիրէի Համալսարանի մասնաճիւղերէն՝ Քոլլէյաթ էլ-Թարպէյա էլ-Նաու'էյայի մէջ տեղի կ'ունենայ տոքթորական թեզի պաշտպանութիւն, որուն նիւթն էր՝ *Տիգրան Զուհաճեանի դաշնակի ստեղծագործութիւններուն կատարողական-թեքնիքական առանձնայատկութիւնները*: Ատենախօսն էր Նակուա էլ-Շահաթ Պայումի, գիտական ղեկավար՝ տոքթ. Սուրայա Սայէտ Սուլայման, ընդդիմախօսներ՝ տոքթորներ Մուֆիտա Ահմատ Ալի եւ Լայլա Ամին էլ-Սայատ[14]:

Թեզին հիմքը կը կազմէր հինգ ստեղծագործութիւն՝ *Mouvement perpétuel*; *Fantaisie orientale* No. 1; Grande Valse fantastique, *Illusions*; Gavottine, *Un moment de plaisir* եւ Danse caractéristique, *L'orientale*:

Թեզը կը բովանդակէր լիարժէք տեղեկութիւններ հայ երաժշտութեան եւ յատկապէս հայկական դաշնակի գրականութեան պատմութեան մասին: Իսկ հինգ գործերու կատարողական-թեքնիքական մանրամասն վերլուծութեան կը նախորդէր անոնց տեսական վերլուծութիւնը:

Նոյեմբեր 8-ի քննարկումին, Նակուա կը համառօտագրէ իր միտքերը.

«Զուհաճեանի գործերը կը յատկանշուին արեւելեան շունչով եւ յառաջացած թեքնիքական վարպետութեամբ...: Իր դաշնակի գործերը կը բովանդակեն գեղարուեստական եւ թեքնիքական բարձր արժէքներ եւ կը պահանջեն կատարողական յառաջացած վարպետութիւն...:

«Անոնց արեւելեան բնոյթը կը համապատասխանէ եգիպտացի ընկերութեան եւ կատարողներու յոյզերուն, որով անոնք մեզի համար կ'ունենան մեծ կարեւորութիւն»:

Քննարկումի ընթացքին տոքթ. Մուֆիտա շեշտեց ընտրուած նիւթին կարեւորութիւնը, աւելցնելով՝ որ շնորհիւ Զուհաճեանի եւ եգիպտական երաժշտութեան սերտ կապին, Զուհաճեան բարի ընդունելութիւն կրնայ գտնել եգիպտացի երաժիշտին մօտ: Եգիպտացի մասնագէտը կրնայ դիմել Զուհաճեանի արուեստի ուսումնասիրութեան, քանի որ այստեղ կարելի է կապել ընկալումի արեւելեան հոգին արեւմրտեան ուսումնասիրութեան մը հնարաւորութիւններուն հետ, ինչպէս կատարուած է ներկայ թեզին մէջ: Կ'եզրակացնէ, թէ այս գեղեցիկ ստեղծագործութիւնները՝ եթէ կատարուին այստեղ, հրաշալիօրէն պիտի դիմաւորուին ունկնդիրին կողմէ:

Տոքթ. Լայլա իր քննարկումը կը սկսի նոյնպէս վեր հանելով նիւթին կարեւորութիւնը: Կ'ըսէ՝ թէ թեզին մէջ յիշատակուած են նաեւ «խումբ մը հայ երաժիշտներ, որոնք կրնան ուսումնասիրութեան նիւթ դառնալ այլ հետազօտողներու կողմէ»[15]:

## CAPRICE, LA LYRE ORIENTALE
## ՔԱՓՐԻՉԻՕ, ԱՐԵՒԵԼԵԱՆ ՔՆԱՐԸ

Չուհաճեանի դաշնակի գործերուն մէջէն՝ Շուշանիկ Ափոյեան նախապատուութիւն կու տայ *Արեւելեան քնարը*ին, գրելով.

«Չուհաճեանի ֆանթէզիներուն մէջ հետաքրրքրութիւն կը ներկայացնէ *Արեւելեան քնարը*...: Ան կը միաւորէ տարբեր բնոյթով հիմնանիւթեր [themes]: Իւրայատուկ առաջին «արեւելեան» մեղեդին՝ որ յաճախակի կը դիմէ համաձայնոյթի [mode] վերի օժանդակ յենակէտին, առատօրէն զարդանախշուած է:

«Կուռ տռամաթիք զարգացումի գիծը, վիրթիւոզական հիւսուածքը եւ փոփոխակումի զանազան ձեւերը յառաջ կը բերեն ծաւալուն ձեւ, ազդեցիկ, տպաւորիչ հնչողութիւն»[16]:

Իր հիմնանիւթերէն երեքը օգտագործած է նաեւ *Զէմիրէ* օփերային մէջ: Դաշնակի այլ գործեր եւս ուղղակիօրէն թէ անուղղակիօրէն առնչուած են *Զէմիրէ*ին հետ: Հետեւաբար, անհրաժեշտ է այստեղ ներկայացնել օփերայի համառօտ պատմականը եւ ձեռագիրները, որոնց հիման վրայ աւելի կը յստակուին դաշնակի այս գործերուն պատմական հանգամանքները:

*Զէմիրէ* օփերան ունեցած է երեք գլխաւոր տարբերակներ: Առաջին տարբերակը Չուհաճեան յօրինած է Տիգրան Գալէմճեանի թուրքերէն լիպրեթթոյին վրայ եւ աւարտած 1888-ի վերջաւորութեան: Ան կը կրէր *Էպուտիա վէ Զէմիրէ* խորագիրը, իսկ սեռը նշանակուած էր օփերա քոմիք: Այս տարբերակը երբեք իր բեմական մարմնաւորումը չի ստանար, թէեւ անոր երկու «Արաբական պար»-երը եւ *Pot-Pourri*-ն 1888 Դեկտեմբերէն սկսեալ Պոլսոյ մէջ բազմիցս կը նուագուին նուագախումբի կատարումով եւ կը գտնեն լայն տարածում:

1890 Հոկտեմբերին, ֆրանսական երաժըշտա-թատերական խումբ մը կը ժամանէ Պոլիս: Շուտով, Չուհաճեանի եւ թատերախումբի տնօրէնին միջեւ համաձայնութիւն կը կնքուի ֆրանսերէն լեզուով բեմադրելու օփերան: Պետրոս Անմեղեան, Աղեքսանդր Փանոսեան եւ Յովհաննէս Աճէմեան անմիջապէս լիպրեթթոն կը թարգմանեն ֆրանսերէն, իսկ Չուհաճեան բարեփոխումներ կը ներմուծէ երաժշտութեան մէջ: Օփերան կը վերանուանուի *Zémireh,* opéra comique et féerique (*Զէմիրէ*, օփերա քոմիք եւ դիւթական): Այս երկրորդ տարբերակի առաջին բեմադրութիւնը տեղի կ'ունենայ 1891 Մարտ 31/Ապրիլ 12-ին, Բերայի Ֆրանսական Նոր Թատրոնին մէջ, եւ քանիցս կը կրկնուի: Յաջողութիւնը կ'ըլլայ անմիջական ու խանդավառ:

1891 Հոկտեմբերին, Չուհաճեան կը մեկնի Փարիզ, ուր՝ այլ ծրագիրներու կարգին, կը փափաքէր բեմադրել *Զէմիրէ*ն: Այս նպատակով կը կատարէ նոր սրբագրութիւններ՝ յատկապէս խօսակցական մասերը փոխարինելով ասերգներով: Ստեղծագործութիւնը օփերա քոմիքէն կը վերաճի օփերայի: Այս տարբերակը կարելի է համարել յետագային կատարուելիք երրորդ եւ վերջին տարբերակին նախահիմքը: Քանի մը ամիս Փարիզի մէջ անցընելէ ետք, 1892-ի սկիզբները ձեռնունայն կը վերադառնայ Պոլիս եւ դարձեալ կ'աշխատի *Զէմիրէ*ին վրայ:

1894-ին, Չուհաճեան բանակցութիւններ կը վարէ այդ ժամանակամիջոցին Պոլիս գտնուող իտալական օփերայի խումբի մը տնօրէն՝ պր. Ֆրանձինիի հետ, Քոնքորտիա թատերասրահին մէջ *Զէմիրէ*ն ներկայացնելու համար: Այս նպատակով, նոյն տարուայ ամռան, կը ստեղծէ օփերային երրորդ տարբերակը՝ իտալերէն լիպրեթթոյով: Նոր լիպրեթթոյի հեղինակին անունը կը մնայ անյայտ: Սեռը կը վերածուի օփերա սեմի սերիայի: Այս տարբերակի բեմադրութեան մասին ոչ մէկ տեղեկութիւն գտայ պոլսահայ ժամանակակից մամուլին մէջ: Մամուլի տեղեկութիւնները կը վերաբերին նախաբեմադրական շրջանին: Հաւանաբար՝ հակառակ նախապէս կատարուած յայտարարութիւններուն, բեմադրութիւնը տեղի չէ ունեցած[17]:

Գոյութիւն ունեցած է նուագագրութեան

(orchestral score) միակ ձեռագիր մը՝ **ՉԳԱԹ ՉԴ** թիւ 16, 17 (ՀԹ 7), որուն մէջ խմբաքանչիւր նոր տարբերակի ստեղծագործումին համար Չուհաճեան անջատած-աւելցուցած է բազմաթիւ թերթեր: Կը գտնուին նաեւ երկրորդ տարբերակին յարող ֆրանսերէն դաշնակագրութիւնը (vocal score)՝ **ՉԳԱԹ ՉԴ** 18 (ՀԹ 10), եւ երրորդ տարբերակի իտալերէն երկու միանման դաշնակագրութիւններ՝ **ՉԳԱԹ ՉԴ** թիւ 19 (ՀԹ 11), թիւ 20 (ՀԹ 11)[18]: Առաջին տարբերակին ժամանակ յօրինած է նաեւ նուագախումբի համադրութիւն մը՝ *Pot-pourri sur les motifs de l'opéra Eboudiat et Zémiré* (Փոփուրի Էպուտիա եւ Զէմիրէ օփերայի եղանակներուն վրայ)[19]:

*Արեւելեան քնարքի* առաջին մասը՝ Largo (հատուածներ 1-23), եւ առաջին ու երկրորդ մասերուն կապող մասը՝ Allegro vivo (հատուածներ 24-41), կը հանդիսանան *Զէմիրէ* օփերայի Գ. արարի Զէմիրէի քնարական ռոմանսին նախաբանը, որ առկայ է օփերայի առ նուազն երկրորդ եւ երրորդ տարբերակներուն մէջ (*տե՛ս* **ՉԳԱԹ ՉԴ** թիւ 19 (ՀԹ 11), էջ 80ա-81ա. թիւ 20 (ՀԹ 11), էջ 79ա-81. թիւ 18 (ՀԹ 10), էջ 73-74. եւ թիւ 17 (ՀԹ 7), էջ 30ա-33ա): Իսկ երրորդ մասը՝ հատուածներ 99-165, կը ներկայացնէ *Զէմիրէի* առաջին տարբերակէն մաս մը՝ որ դուրս մնացած է յետագայ տարբերակներէն (*տե՛ս* **ՉԳԱԹ ՉԴ** թիւ 26 (ՀԹ 12), էջ 14-19ա):

Տպագիր օրինակին տուեալներն են.
Propriété de l'auteur
Éditeurs H. Aramian & Cie
34, Grande rue Hamidié
Stamboul
Gravé et imprimé par C. G. Röder à Leipzig
[Սեփականութիւն հեղինակին
Հրատարակիչներ՝ Յ. Արամեան եւ Ընկ.
34, Կռանտ Համիտիէ փողոց
Իսթանպուլ
Փորագրութիւն եւ տպագրութիւն Ք. Կ. Ռէօտէրի Լայփցիկի մէջ]

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ թիւ 185 (ՀԹ 46):

## DANSE CARACTÉRISTIQUE, L'ORIENTALE
## ՅԱՏԿԱՆՇԱԿԱՆ ՊԱՐ, ԱՐԵՒԵԼԵԱՆԸ

Բացի այս հատորին համար հիմք հանդիսացող դաշնակի տպագիր տարբերակէն՝ գոյութիւն ունին նաեւ նոյն երաժշտութեան երեք հեղինակային տարբերակներ.

1.-Նուագախումբի համար, խորագիր՝ *L'Orientale*, Danse caractéristique. ձեռագիր՝ **ՉԳԱԹ ՉԴ** թիւ 79 (ՀԹ 32) – թիւ 80 (ՀԹ 32):

2.-*Արշակ Բ.* օփերայի Դ. արարի «Պարահանդէսի տեսարան»-ի վերջին պարը. ձեռագիր՝ **ՉԳԱԹ ՉԴ** թիւ 8 (ՀԹ 3), ԺԱ. պրակ, էջ 1-12. տպագիր՝ Տիգրան Չուհաճեան, *Արշակ Բ.*, նուագագրութիւն, Գահիրէ, 2000, էջ 617-652: Ասիկա օփերայի ձեռագիրի մատիտագիր այն սակաւաթիւ էջերէն է՝ զորս հեղինակը աւելցուցած է ստեղծագործութեան յօրինումի աւարտէն (1868) ետք, հաւանաբար 1890-1891-ին՝ երբ 1891-ին մեկնելով Փարիզ, յոյս ունէր այնտեղ բեմադրել իր օփերաները[20]:

3.-Ստեղծագործութեան առաջին մասը օգտագործուած է իբրեւ *Զէմիրէ* օփերայի երրորդ տարբերակի առաջին «Արաբական Պար»-ի նախաբան, ձեռագիրներ՝ **ՉԳԱԹ ՉԴ** թիւ 17 (ՀԹ 7), էջ 153ա-156ա. **ՉԳԱԹ ՉԴ** թիւ 19 (ՀԹ 11), էջ 121-122. **ՉԳԱԹ ՉԴ** թիւ 20 (ՀԹ 11), էջ 120-121:

Չորս տարբերակներուն միջեւ կը գտնուին տարբերակային բնոյթի զանազանութիւններ:

Դաշնակի տպագիրին տուեալներն են.
Propriété de l'auteur
Éditeur S. Hovsépian
60 Grande rue Hamidié
Constantinople
[Սեփականութիւն հեղինակին
Հրատարակիչ՝ Ս. Յովսէփեան
60 Կռանտ Համիտիէ փողոց
Կոստանտնուպոլիս]

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ թիւ 184 (ՀԹ 47):

## FANTAISIES ORIENRALES SUR DES MOTIFS TURCS
## Nos. 1, 2
## ԱՐԵՒԵԼԵԱՆ ՖԱՆԹԷԶԻՆԵՐ ԹՈՒՐՔԱԿԱՆ ԵՂԱՆԱԿՆԵՐՈՒ ՎՐԱՅ
## ԹԻՒ 1, 2

Կը գտնուի նաեւ Թիւ 1-ի նուագախումբի ձեռագիր տարբերակը՝ ՁԳԱԹ ՁԴ թիւ 88 (ՀԹ 35)։

Թիւ 2-ը Փեշրէֆ մըն է։ Պահպանելու համար այս արեւելեան միաձայն աւանդական սեռին բնականութիւնը, երաժշտահանը օգտագործած է գծային, թափանցիկ նուագակցութիւն մը, դաշնեակներու (chords) լոկ նուագագոյն հպումներով։ Հաւանական է, որ մեղեդին յօրինուած ըլլայ Չուհաճեանի կողմէ՝ հետեւելով Փեշրէֆի առանձնայատկութիւններուն, քանզի փոխադրութիւն (transcription) եւ դաշնակում (harmonization) հասկացութիւնները քիչ բնորոշ են Չուհաճեանի լեզուամտածողութեան։

Տպագիրին տուեալներն են.

Éditeur S. Hovsépian
60 Grande rue Hamidié
Constantinople
Tous droits réservés
[Հրատարակիչ՝ Ս. Յովսէփեան
60 Կռանտ Համիտիէ փողոց
Կոստանտնուպոլիս
Բոլոր իրաւունքները վերապահուած են]

Հրատարակութեանս համար օգտուած եմ հետեւեալ աղբիւրներէն.

*Արեւելեան ֆանթէզի* թիւ 1՝ Փարիզի Նուպարեան Մատենադարան, թիւ 21.591. ՉԳԱԹ թիւ 196:

*Արեւելեան ֆանթէզի* թիւ 2՝ ՉԳԱԹ ՉԴ թիւ 197 (ՀԹ 57):

## IMPROMPTU, CASCADE DE COUZ
## ԷՄՓՐՈՄՓԹԻՒ, ՔՈՒՋԻ ՋՐՎԷԺԸ

Տպագրուած է 1887-ին[21]։

Քուզի Ջրվէժը կը գտնուի Ֆրանսայի Սավուա Փրոփր նահանգին (Province de Savoie Propre) մէջ՝ Շամպէրի օզ էշէլ ճամբուն (route de Chambéry aux Echelles) վրայ։ Ժան-Ժաք Ռուսօ 1731-ին այցելելով այնտեղ, *Միայնակ շրջագայողի մը մտորումներ* (Rêveries d'un promeneur solitaire) գիրքին մէջ զայն կ'ընդունի իբրեւ «ամենագեղեցիկ ջրվէժը զոր տեսած ըլլամ կեանքիս մէջ»։ Լամարթին իր *Վստահութիւններ* (Confidences) գիրքին մէջ կը նկարագրէ՝ թէ Քուզի Ջրվէժը կը գտնուի «հսկայ եւ վտակահոս ստորեզերքին մօտ՝ ուր յորձանքը ուղղահայեացօրէն կը տեղայ հովիտին մէջ, պահլըտած սարէն անջատուած մեծ ժայռի մը ետեւ»։

Ոչ մէկ փաստ կը գտնուի՝ թէ Չուհաճեան երբեւէ տեսած ըլլայ այս Ջրվէժը, որով ստեղծագործութիւնը կը հանդիսանայ իր վառ երեւակայութեան արդիւնքը։

Ասիկա Չուհաճեանի դաշնակի միակ գործն է՝ որ վերահրատարակուած է Հայաստանի մէջ, շնորհիւ Ցիցիլիա Բրուտեանի ջանքերուն[22]։ Սակայն Բրուտեան զանց կ'առնէ *Քուզի Ջրվէժ* խորագիրը եւ կը բաւարարուի միայն երաժըշտական սեռի նշանակումով՝ Էմփրոմփթիւ, որուն պատճառով քօղարկուած կը մնայ ստեղծագործութեան պատկերաւոր կողմը՝ որ այնքան էական նշանակութիւն ունէր վիպապաշտներուն մօտ։

Հայաստանի այս հրատարակութեան հիման վրայ, ամերիկահայ դաշնակահար Շահան Արծրունի կ'իրականացնէ անոր ձայնագրութիւնը[23]։ Սկաւառակի անգլերէն ծանօթագրութիւններուն մէջ Շ. Արծրունի կը գրէ, թէ ստեղծագործութեան մէջ «Չուհաճեան կը պահանջէ մատներու վիրթիւոզականութեան աստիճան մը՝ որ կը մրցակցի Մոշքովսքիի *Étincelle*-ին հետ, եւ կը յառաջացնէ այնպիսի յուզում մը՝ որ կրնայ թնդացնել համերգասրահը»։ Այս ձայնագրութիւնը կը նպաստէ հաստատելու եւ տարածելու դաշնակի բնագաւառին մէջ Չուհաճեանի ունեցած վարկն ու արժէքը։ Ֆրանսահայ երաժշտահան Արա Պարթեւեան այսպէս կը բնութագրէ Արծրունիի ձայնագրութիւնը. «Եւ դեռ ուրիշ սիրելի անուն մը՝ Տիգրան Չուհաճեան, այս վերջինը եթէ անուն շինած է իր համբաւաւոր *Լէպլէպիճի*ով, քիչեր միայն գիտեն որ ան ամէն բանէ առաջ հեղինակ է

**դաշնակահարային հոյակապ եւ բազմաթիւ ստեղծագործութիւններու, որոնցմէ է իր էնփ-րոմփթիւն, եւ որ նոյնքան արժէք կը ներկա-յացնէ որքան ռոմանթիք շրջանի եւրոպական ոեւէ հեղինակի գործ»**[24]:

Տպագիրին տուեալներն են.
Propriété de l’auteur
Constantinople
Inst. Lith. de C. G. Röder, Leipzig
[Սեփականութիւն հեղինակին
Կոստանտնուպոլիս
Մ. Կ. Ռէօտէրի Վիմագրութեան Հաստատու-թիւն, Լայփցիկ]

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ-թիւ 186 (ՀԹ 48):



ՔՈՒՁԻ ՋՐՎԷԺԸ
**Գծագրիչ՝ Լոփփէ**
www.sabaudia.org/v2/expo/vue_de_la_savoie



ՔՈՒՉԻ ՋՐՎԷԺԸ

Լիթոկրաֆ

Կը տնուի *Սավուայի դքսութեան բառարան*

(Dictionnaire du duché de Savoie) **ձեռագիրին մէջ** (1840)

**Սավուա նահանգի դիւան, Քլօտիուս Պուվիէի հաւաքածոյ**

www.sabaudia.org/v2/expo/disco1840

## MOUVEMENT PERPÉTUEL
## ՅԱՒԵՐԺ ՇԱՐԺՈՒՄ

**Կը գտնուի նաեւ անոր դաշնակի եւ նուագախումբի տարբերակը[25]:**

Տպագիրին տուեալները են.
Propriété de l'auteur
Éditeurs H. Aramian & Cie
34, Grande rue Hamidié
Stamboul
Gravé et imprimé par C. G. Röder à Leipzig

[Սեփականութիւն հեղինակին
Հրատարակիչներ՝ Յ. Արամեան եւ Ընկ.
34, Կռանտ Համիտիէ փողոց
Իսթանպուլ
Փորագրութիւն եւ տպագրութիւն Ք. Կ. Ռէօտէրի Լայփցիկի մէջ]
Հրատարակութեանս աղբիւրը սեփականութիւնն է Փարիզի Զուհաճեան Հետազօտական Կեդրոնին:

## GRANDE VALSE FANTASTIQUE, ILLUSIONS
## ՄԵԾ ՖԱՆԹԱՍԹԻՔ ՎԱԼՍ, ՊԱՏՐԱՆՔՆԵՐ

Տպագիրին տուեալները են.
Propriété de l'auteur
Stich u[nd] Druck v[on] F. W. Garbrecht's Nachf., Oscar Brandsteller, Leipzig
[Սեփականութիւն հեղինակին
Փորագրութիւն եւ տպագրութիւն Ֆ. Վ. Կարպրեշթի, Օսքար Պրանտսթելլէր, Լայփցիկ]
Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ թիւ 180 (ՀԹ 44):

## TARENTELLE
## ԹԱՐԱՆԹԷԼ

**Տպագրուած է 1887-ին[26]:**

Տպագիրին տուեալները են.
Propriété de l'auteur
Constantinople

[Սեփականութիւն հեղինակին
Կոստանտնուպոլիս]
Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ թիւ 194 (ՀԹ 54):

## UNE GAVOTTE DE PLUS
## ԿԱՒՈԹ ՄԸ ԵՒՍ

**Տպագրուած է 1883-ին[27]:**

Տպագիրին տուեալները են.
Propriété de l'auteur
Constantinople

[Սեփականութիւն հեղինակին
Կոստանտնուպոլիս]
Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ թիւ 195 (ՀԹ 56):

## GAVOTTINE, UN MOMENT DE PLAISIR
## ԿԱՒՈԹԻՆ, ՀԱՃՈՅՔԻ ՊԱՀ ՄԸ

Տպագիրին տուեալները են.
Propriété de l'auteur
Gravé et imprimé par C. G. Röder à Leipzig
[Սեփականութիւն հեղինակին

Փորագրութիւն եւ տպագրութիւն Ք. Կ. Ռէօտէրի Լայփցիկի մէջ]

Հրատարակիչին անունը չկայ: Բայց քանի որ ստեղծագործութիւնը ձօնուած է Յ. Արամեանին՝ որ հրատարակիչն է *Արեւելեան քնարը*ին, *Յաւերժ շարժում*ին եւ *Մահանուագ*ին, կարելի է ենթադրել՝ որ ասոր հրատարակիչը նոյնպէս Յ. Արամեան եւ Ընկ.-ն է:

Հրատարակութեանս աղբիւրը սեփականութիւնն է Փարիզի Զուհաճեան Հետազօտական Կեդրոնին:

## PROTI POLKA
## ՓՐՈԹԻ ՓՈԼՔԱ

Տպագրուած է 1892-ին[28]:

Փրոթին կը հանդիսանայ յայտնի Իշխանաց Կղզիներէն մէկը: Իշխանաց Կղզիները ինն կղզիներէ բաղկացած ամբողջականութիւն մըն է, որ կը գտնուի Մարմարա Ծովուն մէջ, ասիական Իսթանպուլէն քանի մը քիլոմեթր հեռաւորութեան վրայ: Բիւզանդական շրջանին, այս կղզիները եկեղեցական կեդրոն մըն էին՝ բազմաթիւ մենաստաններով: Նկատի ունենալով՝ որ այդ ժամանակ անոնք նաեւ իշխաններու աքսորավայրն էին, անոնց կը տրուի «Իշխանաց» անունը: Օսմանեան շրջանին, այս կղզիները կ'անտեսուին ու կը լքուին: Կղզիները կը գրաւեն ոչ-մահմետական խումբերու ուշադրութիւնը, որոնք մշտական բնակութիւն կը հաստատեն այնտեղ: Միայն ԺԹ. դարու վերջաւորութեան է՝ որ Թուրք ժողովուրդը կը հետաքրքրուի բնակիլ այս գեղեցիկ բնութեան մէջ:

Ինն կղզիներուն ամենամեծն ու գլխաւորն է Պույուքատան, որ երեք այլ ընդարձակներուն հետ՝ Հէյպէլի, Պուրկազ եւ Գընալը, ունի մնայուն բնակչութիւն:

Իսթանպուլի ամենամօտ կղզին Գընալըն է եւ այս պատճառով ան ծանօթ է նաեւ «Փրոթի» անունով, որ բիւզանդերէն կը նշանակէ «առաջին»: Մինչեւ այսօր, անոր բնակչութեան մեծամասնութիւնը հայեր են, որոնք ունին Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցին:

Պարետ Պարոյր գրական գեղեցիկ արձակի մը մէջ կը նկարագրէ Փրոթիի հրաշալի գեղեցկութիւններն ու խաղաղ միջավայրը[29]:

Իսկ Ն. Գրիգորիսեան կու տայ կղզիին նկարագրութիւնը.

«Պոլսէն մեկնող ամէն հայրենակից անշուշտ յուզումնալից կարօտով մը կը յիշէ մեր կապոյտ Մարմարան, որու վրայ գոհարներու պէս կը հանգչին չորս գեղատեսիլ կղզիները, Իշխանաց Կղզիներ, ինչպէս կը յորջորջուէին Բիւզանդական կայսրութեան օրով:

«Այդ կղզիներէն առաջինը, յունարէն Բռոթի, որ իր կարմիր հողին պատճառաւ Գընալը կը կոչուի, միւս երեքին նման օժտուած չէ մայրիի եւ եղեւինի անտառներով, այլ ծածկուած է ցախերով որոնք թէեւ կանաչութիւն մը շնորհած են իր կողերուն, սակայն բոլորովին ալ չեն պարուրած անոր քարուտ լերկութիւնը: Կղզիին հարաւային արեւելեան մասը ժայռոտ է եւ անընակելի:

«Այս կղզին, հակառակ իր լերկ երեւոյթին, ունի սակայն այնպիսի մտերմիկ եւ հիւրընկալ անկիւններ, այնպիսի լուռ եւ մեկուսի դարաւանդներ ուր մարդ պիտի սիրէր առանձնանալ իր երազկոտ պահերուն:

«Գընալըն օժտուած է նաեւ հոյակապ արշալոյսներով եւ զմայլելի վերջալոյսներով. այդ պահերուն կղզիին հանդիպակաց լեռները մանիշակագոյն կը ներկուին եւ զանոնք եզերող պարուրաձեւ գիծը աւելի եւս կը շեշտուի նկարչագեղ տեսարան մը պարզելով:

«Այս կղզիին մէջ, հայերը ունին սիրուն փոքրիկ եկեղեցի մը բարձունքին վրայ շինուած, բնակչութեան մեծագոյն մասը հայերէ կազմըւած ըլլալով. ունին նաեւ ազգային վարժարան մը»[30]:

Ահա այս Փրոթի-Գընալը կղզիին մէջ է՝ որ Զուհաճեան կը յօրինէ իր փոլքան:

*Արեւելք* մանրամասնօրէն կը նկարագրէ այս փոլքայի յօրինումին նախադրեալները: Կը գրէ՝ թէ Փարիզի անյաջող ուղեւորութենէն ետք, Զուհաճեան «ամէն ճշմարիտ բանաստեղծի պէս, ինքն ալ տրտմութեան ու լքման վայրկեաններու մէջ սփոփանք փնտռեց իր քնարին, – դաշնակին, – ապաստանած: *Զէմիր*էն լուրջ օբէրայի վերածելու համար՝ Ֆէրիտիյէի մէկ անկիւնն, իւր մռացուած արուեստագէտի բնակարանին մէջ երկար ամիսներ աշխատելէ յետոյ, չունչ առնելու պէտք կը զգայ ու Գնալըի

գեղածիծաղ ափունքը կ'երթայ ներշնչում ու կազդուրում փնտռելու: Հոն բարեկամներ կը շրջապատեն զինքն եւ գիշեր մըն ալ կ'առաջնորդեն իրեն՝ նորաշէն փոքրիկ Թատրոնին համեստ նուագախումբը վարել. իր երաժշտական առաջին փորձերն ու արուեստագիտական կեանքի պատանեկութիւնը միտքը կու գան եւ ահա նուագախումբին գլուխն անցած է Զուխաճեան երիտասարդական աւիւնով մը, ու եղանակներուն կ'առաջնորդէ այն գուրգուրանքով որով առաջնորդած էր երբեմն իր մեծ հեղինակութիւններուն: Ա՛հ, մտերմական շրջանակի մը համակրանաց արտայայտութիւնն ի՛նչ անոյշ կը հնչէ. կայ ժամանակ որ շատ աւելի ազդեցիկ է քան օտար հանդիսականներու որոտնդոստ ծափերն որոց մէջ ամբոխի գոռումին պէս բան մը կայ: Այն քանի մը օրերու միջոցին զորս Զուխաճեան կ'անցունէ այդ բանաստեղծական կղզեակին մէջ, արտադրելու պէտք մը կը զգայ. իր շուրջը՝ պար, երգ, ցնծուն երիտասարդութիւն մը, պահ մը մոռցնել կու տան իր դառնութիւնները, եւ ահա ափ յափոյ կը հեղինակէ սիրուն բօլքա մը զոր կղզւոյն անուան կը նուիրեն իսկոյն, **ԲՕԼՔԱ ԲՌՕԹԻ**: Այլ որքան իբր ժամանց կամ զբօսանք գրուած, այդ եղանակին մէջ երաժշտապետը խառնած էր մաս մը իր արուեստագէտի ներշնչումէն, իր տաղանդէն. պէտք չէր որ աշնան առաջին հովերը առնէին տանէին զայն կղզիին ափունքներէն, օդին մէջ ցրուելու: Նկարիչ մը Գրնալըի պատկերը կը գծէ ու ձայնատետրին հետ մէկտեղ կը ղրկեն Լայբձիկ: Քիչ օրէն, կը ստանանք Բօլքա Բռօթին՝ ճոխ տետրերու վրայ փորագրուած: Եւ ձմեռը, հայ սրահներու մէջ, ուր անշուշտ պիտի նուագեն զայն, երբ անոր զուարթ եղանակներն հնչեն մեր ականջին ու ցունց տան մեր սրտին, նոր խանդով կը յիշենք Զուխաճեանը»[31]:

*Հայրենիք* այսպէս կը փոխանցէ տպագրութեան լուրը.

«Շնորհակալութեամբ ստացանք երաժշտապետ Տիգրան էֆէնտի Զուխաճեանի վերջին երկասիրութիւնը *Բռօդի-բօլքա*:

«Անոնք որ Բրօդիի ծիծաղագեղ ափունքներուն վրայ այս ամառը անցուցին, կը յիշեն այդ ոստոստուն բօլքան, որ հոն, ծովին մօտ, յղացուեցաւ ու նուագուեցաւ առաջին անգամ: Կապոյտ երկնքին տակ, ճերմակ փրփուրներու մօտ երկնուած այդ գողտրիկ եղանակն անշուշտ նոյն ախորժ տպաւորութիւնը պիտի գործէ ձմեռնային սալօններուն մէջ, յորձանապտոյտ պարերու երփներանգ ալիքին մէջ»[32]:

Շուրջ 35 տարի ետք՝ 1927-ին, պոլսահայ ուրիշ նշանաւոր երաժիշտ մը՝ Էտկար Մանաս, նոյնպէս պիտի հմայուէր այս կղզիներու գեղեցկութեններէն եւ պիտի հրատարակէր դաշնակի նուագաշար մը՝ *Իշխանաց կղզիներ*, որուն առաջին մասը պիտի կոչէր «Փրոթի»:

Տպագիրին տուեալները են.
Éditeur S. Hovsépian
60 Grande rue Hamidié
Constantinople
[Հրատարակիչ՝ Ս. Յովսէփեան
60 Կռանտ Համիտիէ փողոց
Կոստանդնուպոլիս]
Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ-քիւ 190 (ՀԹ 51):

## POLKA, LA GAÎTÉ
## ՓՈԼՔԱ, ԶՈՒԱՐԹՈՒԹԻՒՆԸ

Տպագիրին տուեալները են.
Propriété de l'auteur
Gravé et imprimé par C. G. Röder à Leipzig
[Սեփականութիւն հեղինակին
Փորագրութիւն եւ տպագրութիւն Ք. Կ. Ռէօտէրի Լայփցիկի մէջ]
Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ-քիւ 181 (ՀԹ 45):

## MAZURKA DE SALON, MIGNON
## ՍԱԼՈՆԻ ՄԱԶՈՒՐՔԱ, ՍԻՐՈՒՆ

Տպագիրին տուեալները են.
Propriété de l'auteur
Gravé et imprimé par C. G. Röder à Leipzig
[Սեփականութիւն հեղինակին

Փորագրութիւն եւ տպագրութիւն Ք. Կ. Ռէօտէրի Լայփցիկի մէջ]

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ թիւ 189 (ՀԹ 50):

## SPLENDIDE-QUADRILLE
## ՇՔԵՂ–ՔԱՏՐԻՑ

Տպագիրին տուեալներն են.
Éditeur S. Hovsépian
60 Grande rue Hamidié
Constantinople
Gravé et imprimé par C. G. Röder à Leipzig
[Հրատարակիչ՝ Ս. Յովսէփեան
60 Կռանտ Համիտիէ փողոց
Կոստանտնուպոլիս
Փորագրութիւն եւ տպագրութիւն Ք. Կ. Ռէօտէրի Լայփցիկի մէջ]

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ թիւ 193 (ՀԹ 53):

## MARCHE FUNÈBRE
## ՄԱՀԱՆՈՒԱԳ

Ունի հայերէն լեզուով հետեւեալ խորագիրը. «Արտօսր ի շիրիմ Տ. Տ. Մեծին Ներսէսի երիցս երանեալ հայրապետին եւ Թուրքիոյ հայոց պատրիարքին. Մահանուագ»:

Յօրինուած է Թրքահայոց պատրիարք Տ. Ներսէս Վարժապետեանի վախճանումին առիթով: 1884-ին, Գէորգ Դ. Կաթողիկոսի վախճանումէն ետք, Ն. Վարժապետեան կ'ընտրուի Ամենայն Հայոց Կաթողիկոս, բայց անժամանակ մահը կը խափանէ ստանձնելու իր պաշտօնը[33]: Ան եղած է լայն ժողովրդականութիւն վայելող պատրիարք: Իր թաղումի արարողութիւնը կը կատարուի մեծ շուքով եւ համաժողովրդական սուգով:

Հայրենի սիրով տոգորուած Չուհաճեան՝ ինչպէս ողջ Թրքահայութիւնը, եղելութեան կ'արձագանգէ՝ յօրինելով այս յուզիչ Մահանուագը (Սգոյ Քայլերգ):

Տպագրուած է 1884-ին[34]:

Ահաւասիկ *Արեւելքի* մեկնաբանութիւնը. «Ազգային երաժշտապետ Տիգրան էֆէնտի Չուհաճեան, ըստ օրինակի բազմաթիւ անձանց եւ ազգային ընկերութեանց որք ծաղկեաց պսակներ եւ փունջեր սփռեցին յոտս դագաղին երջանկայիշատակ Ներսէս Պատրիարքին, *Արտօսր ի շիրիմ* տիտղոսով եղերերգ մը յօրինած է ի յիշատակ ողբացեալ Պատրիարքին. այս եղերերգ, զոր հեղինակը *Մահանուագ* կը կոչէ, տխուր հառաչանք մ'է երաժշտական նշանագրերու մէջ ամփոփուած. եղանակը խորին եւ վշտահրաւէր ձայնիւ մը կը սկսի, սակաւ ինչ յետոյ կը բարձրանայ եւ իբր յուսահատական ճիչ մ'արձակելով կը խոնարհի դարձեալ եւ կը խորասուզուի. քաջահմուտ հեղինակը ճիշդ օրինակած է սգազգած սրտին ելեւէջը: Սոյն ընտիր հեղինակութիւնն որ առայժմ դաշնակի համար գրուած է եւ որ երաժշտութեան տեղեակ անձանց լիուլի գոհունակութիւն եւ ներբողից արժանացած է, քանի մ'օրէն հրապարակ պիտի ելնէ, գի արդէն մամլոյ ներքեւ է նոյն իսկ Կ. Պոլսոյ մէջ, Բերա Թէքէ-Ճատտէսի թիւ 506 Նօթաճի հաճի էմէն էֆէնտիի տպարանը»[35]:

Ղազարոս քահ. Յովսէփեան կը գրէ հետեւեալը. «Երջանկայիշատակ Տ. Ներսէս Վարժապետեան պատրիարքի յուղարկաւորութեան տխուր հանդէսը ո'չ մի օրագիր այնպէս նկարագրած չէ, ո'չ մի ճարտարախօս լեզու այնպէս պատմած չէ, ինչպէս որ տաղանդաւոր երաժիշտ Տ. Չուհաճեանը ներկայացնում է այդ հանդէսը չորս երեսից բաղկացած իւր հիւսած մահանուագով, որի սիրտ յուզող եղանակը, մինչեւ անգամ քարասիրտ մարդոց աչքերից արցունք քամելու ոյժ ունի»[36]:

Տպագիրին տուեալներն են.
Սեփականութիւն Յ. Արամեան եւ Ընկ.

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ 188 (ՀԹ 136):

## QUATRE FUGUES
## ՉՈՐՍ ՖԻՒԿ

Դաշնակի չորս ֆիւկերէն երկուքը տպագրուած են եւ երկուքը մնացած են ձեռագիր:

**ՁԳԱԹ ՁԴ** թիւ 91 (ՀԹ 66) եւ թիւ 92-ի (ՀԹ 66) մէջ կը գտնուին դաշնակի անտիպ ֆիւկերուն ինքնագիրները, որոնք յաջորդաբար թուագրուած են **Ֆիւկ** թիւ 1 եւ **Ֆիւկ** թիւ 3: Տպագրուած երկու ֆիւկերը լոյս տեսած են մէկ պրակով, հետեւաբար թուագրուած են թիւ 1 եւ 2: Այս տպագրուած ֆիւկերուն ձեռագիրները չկան դիւանին մէջ: Բնականաբար, ձեռագիրի թիւ 1-ը եւ տպագիրի թիւ 1-ը նոյն ֆիւկերը չեն:

Դիւանի նոյն թղթածրարներուն մէջ (**ՁԳԱԹ ՁԴ** թիւ 91, 92 եւ 93 (ՀԹ 66)) կը գտնուին դաշնակի միեւնոյն չորս ֆիւկերուն լարային եռանուագի եւ քառանուագի տարբերակները՝ որոնք բոլորն ալ հեղինակի կենդանութեան մնացած էին անտիպ: Ձեռագիր դաշնակի թիւ 1 եւ թիւ 3 ֆիւկերը կը համապատասխանեն լարայիններու միեւնոյն թիւ 1 եւ 3-ին: Կը պարզուի՝ որ տպագիր դաշնակի **Ֆիւկ** թիւ 1-ը իրականութեան մէջ ձեռագիրի պակսող դաշնակի **Ֆիւկ** թիւ 2-ն է, իսկ տպագիր **Ֆիւկ** թիւ 2-ը՝ ձեռագիրի **Ֆիւկ** թիւ 4-ը, քանի որ դաշնակի տպագիր թիւ 1 եւ 2-ը կը նոյնանան ձեռագիր լարայիններու յաջորդաբար թիւ 2 եւ 4-ին հետ: Յստակ է՝ որ դաշնակի երկու ֆիւկերուն տպագրութենէն ետք՝ հեղինակը պատշաճ չէ դատած պահպանել ձեռագիրները: Ուրեմն, դաշնակի չորս ֆիւկերը երաժշտահանին համար կազմած են մէկ ամբողջականութիւն եւ միայն տպագրութեան համար անջատուած են իրարմէ: Այս հատորին համար, չորս ֆիւկերուն թուագրումները վերադարձուցի ըստ բնագիր ձեռագիրներուն:

Դաշնակի **Ֆիւկ** թիւ 1 եւ 3-ը ընթացքի (tempo) նշում չեն կրեր: Ընթացք նշանակուած է համապատասխան լարային տարբերակներուն մէջ:

Ձեռագիրներուն տուեալներն են.

1.-ՁԳԱԹ ՁԴ թիւ 91 (ՀԹ 66).

ա.-Ֆիւկ թիւ 1, դաշնակի համար:

բ.-Ֆիւկ թիւ 1, ջութակի, ջութի (viola) եւ թաւջութակի համար, նուագարաններու առանձին ձայներ, նուագագրութիւնը (score) չկայ:

գ.-Ֆիւկ թիւ 2, ջութակի, ջութի (viola) եւ թաւջութակի համար, նուագարաններու առանձին ձայներ, նուագագրութիւնը (score) չկայ:

2.-ՁԳԱԹ ՁԴ թիւ 92-ի (ՀԹ 66)

ա.-Ֆիւկ թիւ 3, դաշնակի համար:

բ.-Ֆիւկ թիւ 3, ջութակի, ջութի (viola) եւ թաւջութակի համար, նուագարաններու առանձին ձայներ, նուագագրութիւնը (score) չկայ:

3.-ՁԳԱԹ ՁԴ թիւ 93 (ՀԹ 66)

Ֆիւկ թիւ 4, երկու ջութակի, ջութի (viola) եւ թաւջութակի համար, նուագարաններու առանձին ձայներ, նուագագրութիւնը (score) չկայ:

Բոլորն ալ Չուհաճեանի ինքնագիրներն են, գրուած են մատիտով՝ մաքուր ու յստակ գրութեամբ, անթուակիր են, կը կրեն հեղինակին ստորագրութիւնը՝ D. Tchouhadjian:

Իսկ տպագիր երկու ֆիւկերուն տուեալներն են.

Chez S. Hovsépian
60 Grande rue Hamidié
Constantinople
Inst. Lith. de C. G. Röder, Leipzig
[Ս. Յովսէփեանի մօտ
60 Կռանտ Համիտիէ փողոց
Կոստանտնուպոլիս
Մ. Կ. Ռէօտէրի Վիմագրութեան Հաստատութիւն, Լայփցիկ]

Հրատարակութեանս ձեռագիրին աղբիւրն է՝ ՁԳԱԹ ՁԴ թիւ 91 (ՀԹ 66) եւ թիւ 92 (ՀԹ 66):

Հրատարակութեանս տպագիրին աղբիւրն է՝ ՁԳԱԹ ՁԴ թիւ 178 (ՀԹ 42):

## PIÈCE
## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

**ՁԳԱԹ ՁԴ** թիւ 130-ը (ՀԹ 91) անտիպ ձեռագիր մըն է, մատիտագիր մաքուր գրութեամբ, գրուած Չուհաճեանի ձեռագիրով: Զունի խորագիր, չեն նշուած նուագարանը եւ ընթացքը (tempo), չկայ Չուհաճեանին անունը: Գրուած է դաշնակի սովորական երկու

հնգագիծի վրայ: Ինչպէս Զուհաճեանի բոլոր ձեռագիրները՝ անթուակիր է: Մատիտագիր հիմնական գրութեան վրայ կայ սեւ մելանով քանի մը սրբագրութիւն՝ նոյնպէս Զուհաճեանի ձեռագիրով: Այս սրբագրութիւնները սխալ գրութեան կամ ընդօրինակութեան արդիւնքը չեն, այլ յօրինողական յղացումի փոփոխութեան, հանգամանք մը՝ որ կրնայ հաստատել գործին ինքնութիւնը:

Կազմուած է 6 թերթէ: Առաջին էջին վերը աջ կողմէն հայատառ թուրքերէն գրուած է «պակասաւոր»: Ի՞նչն է արդեօք «պակասաւոր»-ը այս ամբողջացուած գործին մէջ:

Այնուամենայնիւ, եթէ երաժշտագիտական-ձեռագրագիտական կողմը օգնութիւն չի ցուցաբերեր, ստեղծագործութեան ունկնդրութիւն մը կրնայ կողմնորոշում տալ: Ուշադիր ունկնդրելով դայն դժուար չէ նկատել՝ թէ ան ամբողջական գործ մըն է, միջին (թենորի) ձայնը բովանդակելով խիստ արտայայտիչ, սահուն եւ հետեւողական մեղեդի մը, իսկ գործն ամբողջութեամբ ունի յստակօրէն կառուցուած սկիզբ, զարգացում եւ աւարտ: Հիւսւածքն անկասկած դաշնակային (pianistic) է, բաւական բարդ կատարողական արհեստավարժութեամբ (technique): Հաստատապէս, դաշնակահարի մը հաճելի ուղեկիցը կրնայ ըլլալ ան:

Այս հատորին մէջ, պայմանականօրէն դայն խորագրեցի Pièce (Ստեղծագործութիւն):

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ թիւ 130 (ՀԹ 91):

## ARIF, DUO FINALE DU 1er ACTE, “TENNI TENNENI”
## ԱՐԻՖ, Ա. ԱՐԱՐԻ ՎԵՐՋԱՄԱՍ ԶՈՒԳԵՐԳ՝ «ԹՐԱ ԼԱ ԼԱ ԼԱ»

## ARIF, GRAND CHOEUR DU 1er ACTE, “SÉFA GUELDINIS”
## ԱՐԻՖ, Ա. ԱՐԱՐԻ ՄԵԾ ԽՄԲԵՐԳ՝ «ԲԱՐՈՎ ԵԿԱՔ»

## ARIF, DUO, “ARIF ARTIK USATMAM”
## ԱՐԻՖ, ԶՈՒԳԵՐԳ՝ «ԱՐԻ՛Ֆ, Ա՛Լ ՄԻ ԵՐԿԱՐԵՐ»

Ֆրանսացի թատերաբան Ատոլֆ Թալասօ, *Revue Encyclopédique*-ի 1899 Դեկտեմբեր 9-ի թիւին մէջ կը հրատարակէ ժամանակակից թուրքական թատրոնին նուիրուած յօդուած մը, ուր կը գրէ՝ թէ «*Արիֆ*ի երաժշտութիւնը հրաչակերտ մըն է, իր տեսակին մէջ անզուգական» եւ կը շարունակէ. «Հասարակութենէն միշտ վերախնդրուած շատ մը հատուածներուն մէջ կան մասնաւորապէս, առաջին արարուածին՝ «Թենէ թենենի» երկանուագը (Թրա լա լա լա), եւ վերջաւորական պարերգը, «Սեֆա կելտինիզ» (բարով եկաք), երրորդ արարուածին վերջաւորական երկանուագը, «Արիֆ, արթըք ուզաթմա» (Արի՛ֆ, ա՛լ մի երկնցներ), որ այդ նուագերգութեան «քլու»-ն կը նկատուի, եւ միշտ կրկնել, նոյն իսկ երեքկնել տրուած է հասարակութեան կողմէ»[37]:

Ճիշդ այս երեք տեսարաններն են՝ զորս Զուհաճեան դաշնակի փոխադրելով կը յանձնէ տպագրութեան:

*Արիֆ* օփերէթը առաջին անգամ բեմադրուած է 1872 Դեկտեմբերին, ուր իբրեւ երաժըշտութեան հեղինակակից յիշատակուած է Ա. Սեպասթիանոյի մը անունը: Բեմադրութիւնը կ'անցնի առանց նշանակալի յաջողութեան: Զուհաճեան կը վերամշակէ երաժշտութիւնը եւ 1874 Հոկտեմբերին տեղի կ'ունենայ *Արիֆ*ի երկրորդ, վաւերական տարբերակին բեմադրութիւնը: Այս անգամ հեղինակակից կը յիշատակուի ոմն Ալեսանտրօ Ալպորեթթօ: Ի՞նչ է այս երկու անծանօթ իտալացիներուն բուն դերը՝ յայտնի չէ: Բայց անկասկած, երաժշտութեան հիմնասիւնը միշտ հանդիսացած է Զուհաճեան: Տպագրուած երեք փոխադրութիւններուն առաջին երկուքին մէջ յիշատակուած է միայն Զուհաճեանին անունը, իսկ երրորդին մէջ՝ համատեղաբար Զուհաճեան եւ Ալպորեթթօ: Եզրակացութիւններու յանգիլ տակաւին կանուխ է:

Տպագիր օրինակներուն տուեալներն են.

1.-«Թրա լա լա լա»

Propriété de l’éditeur pour tous les pays

Constantinople chez F. Adam

Stich und Druck von F. W. Garbrecht in Leipzig

[Սեփականութիւն հրատարակիչին բոլոր երկիրներուն համար

Կոստանտնուպոլիս, Ֆ. Ատամի մօտ

Փորագրութիւն եւ տպագրութիւն Ֆ. Վ. Կարպրեշթի Լայփցիկի մէջ]

Հրատարակութեանս աղբիւրը սեփականութիւնն է Փարիզի Չուհաճեան Հետազօտական Կեդրոնին:

2.-«Բարով եկար»

Seule propriété pour tous les pays

Constantinople, F. Adam

Stich und Druck von F. W. Garbrecht in Leipzig

[Բոլոր երկիրներու միակ սեփականութիւն՝

Կոստանտնուպոլիս, Ֆ. Ատամի

Փորագրութիւն եւ տպագրութիւն Ֆ. Վ. Կարպրեշթի Լայփցիկի մէջ]

Հրատարակութեանս աղբիւրը սեփականութիւնն է Փարիզի Չուհաճեան Հետազօտական Կեդրոնին:

3.-«Արի՜ֆ, ա՜լ մի երկարեր»

Propriété de l'éditeur

Constantinople

A. Comendinger, M[aison] de la musique & de pianos, Grande rue de Pera 169 & 382

[Սեփականութիւն հրատարակիչին

Կոստանտնուպոլիս

Ա. Քոմենտինկէր, Երաժշտութեան եւ դաշնակի տուն, 169 եւ 382 Կռանտ Փերա փողոց]

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ թիւ 176 (ՀԹ 133):

## EBOUDIAT ET ZÉMIRÉ, "GRAND BALLET ARABE"
## ԷՊՈՒՏԻԱ ԵՒ ԶԷՄԻՐԷ, «ՄԵԾ ԱՐԱԲԱԿԱՆ ՊԱՐ»

*Զէմիրէ* օփերայի «Մեծ արաբական պար»-ի դաշնակի հեղինակային փոխադրութիւնը տպագրուած է 1888-ին եւ կը վերաբերի օփերայի առաջին տարբերակին: Տպագրութեան առիթով, *Արեւելք* յօդուած մը կը նուիրէ անոր, ուր կը գրէ.

«Երաժշտապետ Տ. Չուհաճեան էֆ. նոր գործ մը հրատարակած է սոյն անուամբ [իմա՝ Grand ballet arabe, Հ. Ա.]: Եղանակաց շար մը որոց արաբական նկարագիրն ամբողջ երկին մասնաւոր հրապոյր մը կու տայ: Արեւելեան այս ոճը կը յարմարի նա մանաւանդ *պալլէ*ներու. գիտենք թէ Վէրտի առիթը չէ կորուսած եգիպտական աւաչներով իւր *Աիտա*ն պճնազարդել: Առաջին անգամ չէ որ Չուհաճեան էֆ. սոյն ոճով կը գրէ: Ունեցած ենք արդէն իրմէ ուրիշ արտադրութիւններ, մին միւսէն գերազանց, եւ այն՝ զոր ի լոյս կ'ընծայէ ուրիշ բան չէ բայց եթէ իւր *Էպուտիաթ եւ Զէմիրէ* անուն օբէրայէն առնուած մի շատ սիրուն թերթ ամենասիրուններուն մէջ: Ով որ զինքը տեսած է իւր դաշնամուրին առջեւ յօրինած ատեն այդ չքնաղ գուսաներգութիւնը, չպիտի կարենայ երբեք մոռնալ ի՜նչ խնամօք, ի՜նչ գիտնական մտահոգութեամբ հայ երաժիշտներիս կը չարչըրեր ու կը չարչըրեր իւր հնչեղ գործին հպատակեցնելու համար զայն իւր գաղափարականին, զի պէտք է խոստովանիլ, ինչպէս ամէն արուեստագէտ որ անձնաւորութիւն մըն է, Չուհաճեան ալ ունի իւրն:

«Օր մը թերեւս ըլլանք բաւական բարեբախտ նոր օբէրան ամբողջ լսել թատրոնի մը մէջ, բայց առ այժմ պէտք է ամէն յոյսէ հրաժարիլ եւ գոհանալ հրատարակուած մասովը:

«Չուհաճեան էֆ. արուեստագէտ մ'է, եւ իբր այն, բնականապէս սիրող այն ամէն բանի որ բարեձեւ, գեղեցիկ եւ պսպղուն է»[38]:

Այս պարը անցած է *Զէմիրէ*ի երկրորդ տարբերակին (ՉԳԱԹ ՉԴ թիւ 18, էջ 102-103) իսկ երրորդ տարբերակին մէջ դարձած է նոյն տեսարանի «Երկրորդ պար»-ը (ՉԳԱԹ ՉԴ թիւ 17, էջ 167ա), «Առաջին պար»-ին համար յօրինելով նոր երաժշտութիւն:

Տպագիրին տուեալներն են.

Propriété de l'auteur

Chez S. Hovsépian

Baghtché Kapou, Hamidié djadessi No 60

Constantinople

Inst. Lith. de C. G. Röder, Leipzig

[Սեփականութիւն հեղինակին

Ս. Յովսէփեանի մօտ

Պախչէ Քափու, Համիտիէ փողոց թիւ 60

Կոստանտնուպոլիս

Մ. Կ. Ռէօտէրի Վիմագրութեան Հաստատութիւն, Լայփցիկ]

Հրատարակութեանս աղբիւրն է՝ ՉԳԱԹ ՉԴ թիւ 18 (ՀԹ 10), էջ 102-103-ի միջեւ տեղադրուած օրինակը:

